ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զրույցների համար

Մ. ՍՏԵՊԻՉԵՎ— Ստեղծագործական մարքսիզմի պարտիան . . . . . 1

Մ. ՀԱՍՐԱԹՅԱՆ— Սայաթ-Նովա . . . . 6

Պ. ՂԱԶԱՐՅԱՆ— Զրույց կոլեկտիվում նոր մարդու ձևավորման մասին . 12

Ագիտացիոն աշխատանքի փորձից

Գր. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Օգտվել առաջավորների փորձից 17

Մեթոդական օգնություն ագիտատորներին

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Ինչպես ավելի լավ օգտագործել «Ագիտատորի բլոկնոտ»-ի նյութերը . . . . . . 19

Օգնություն ագիտատորներին

Թեմաներ և գրականություն ագիտատորների զրույցների համար . . 24

СОДЕРЖАНИЕ

Стр

Материалы для бесед

М. Степичев — Партия творческого марксизма 1

Морус Асратян — Саят-Нова . . . . . . 6

П. Казарян — Беседа о формировании нового человека в коллективе . . . . . . . . 12

Из опыта агитационной работы

Гр. Григорян — Пользуйся передовым опытом 17

Методическая помощь агитаторам

В. Петросян — Как лучше использовать материалы из «Агитатори блокнот» . . . . 19

В помощь агитаторам

Темы и литература для бесед агитаторов . . 24

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-73.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 19
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1963

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԱՐՔՍԻԶՄԻ ՊԱՐՏԻԱՆ

*Այն պահից ի վեր, ինչ գոյություն ունի մեծ Լենինի ստեղծած մեր կոմունիստական պարտիան, երկրագնդի շատ մարդկանց մեջ միշտ հարց է ծագում՝ ո՞րն է նրա հզոր ուժը։ Կոմունիստները դրան պատասխանում են պարզ ու հստակ՝ ՍՄԿՊ-ի ուժը, որը նրան անպարտելի է դարձնում, կոմունիզմի մեծ իդեալներն են, հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին։ Պարտիայի բարձրագույն նպատակն է կոմունիստական հասարակարգի կառուցումը։ Եվ նա ամեն ինչ անում է այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար։*

*Դեռևս պարտիայի ստեղծման արշալույսին Վ. Ի. Լենինը այն անվանեց ապագայի պարտիա, նորարարների պարտիա։ Եվ նա իսկապես դարձավ այդպիսի պարտիա։ Ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմ-լենինիզմը, նա համարձակորեն ու վճռապես ետ է մղում իր կենդանի հոգու՝ ռևոլյուցիոն տեսության վրա կատարվող կատաղի գրոհները։ Այդ տեսությունը Ն. Ս. Խրուշչովը պատկերավոր կերպով անվանեց այն ցեմենտը, որը ի մի է ձուլում միլիոնների կամքն ու գործողությունները, պարտիային ու ժողովրդին։*

*Մարքսիզմի հիմնադիրները բազմիցս ընդգծել են, որ իրենց ուսմունքը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց։ Լենինը կոմունիստներին կոչ է անում իրենց*

գործունեության մեջ հաշվի առնել կենդանի կյանքը, իրականության ճշգրիտ փաստերը և ոչ թե շարունակել կառչել երեկվա տեսության։ ՍՄԿՊ-ի ամբողջ գործնական աշխատանքը մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ։ Մեր պարտիայի համար բնորոշ է կոնկրետ պատմական մոտեցումը հասարակական պրոցեսներին։ Իրադրության ճշգրիտ հաշվառումը, երևույթների և իրադարձությունների շղթայի մեջ գլխավոր օղակը զատելու և ուժերի տեղաբաշխումը ճշտորեն որոշելու կարողությունը։

Ինչպիսի բարդ շրջադարձեր էլ կատարի պատմությունը, պարտիան որպես իմաստուն նավավար, միշտ գտնում է ճիշտ գիծը, հաստատուն, փորձված ձեռքով առաջ տանում պետական նավը։ Նա ժամանակին գտնում և ճշտորեն լուծում է կյանքի կողմից առաջ քաշվող հարցերը, ռևոլյուցիոն տեսությունը ստեղծագործաբար կիրառում տվյալ դարաշրջանի պայմաններից, երկրի կոնկրետ առանձնահատկություններից ելնելով, այն հարստացնում է նոր հետևություններով ու դրույթներով։

Այդ մասին ակնառու կերպով վկայում են, օրինակ, մեր երկրի աչքի ընկնող հաղթանակները վերջին, հիրավի մեծ տասնամյակում։ Այդ տասնամյակը իր ծավալով և տեսական գործունեության արդյունքներով Վ. Ի. Լենինից հետո եղել է ամենաստեղծագործական, ամենաբեղմնավոր տասնամյակը։

Այդ տարիներին պարտիան, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն լուծեցին կոմունիզմի կառուցման մի շարք արմատական պրոբլեմներ, մշակեցին ՍՄԿՊ ծրագիրը, որը իրավամբ գնահատվում է որպես արդի հասարակական-գիտական մտքի բարձրագույն նվաճումը, որպես մեր դարաշրջանի կոմունիստական մանիֆեստը։ Ծրագիրը պարզ ու հստակ որոշեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական արտադրական հարաբերությունները կոմունիստականի վերաճելու ուղիները, համաժողովրդական պետությունը կոմունիստական հասարակական ինքնավարության վերաճելու պրոցեսը, նոր մարդու դաստիարակության պրոբլեմները։

Մեր պարտիան մարքս-լենինյան մյուս եղբայրական պարտիաների հետ մեկտեղ մշակեց արդի համաշխարհային հասարակական զարգացման հրատապ պրոբլեմները։ Մարքսիզմի պատմության մեջ առաջին ան-







գամ այնպես կոնկրետ կերպով լուսաբանված են ազատագրական պայքարի գլխավոր էտապները՝ ֆեոդալական-գաղութային ու կապիտալիստական ճնշման տապալումից մինչև կոմունիստական հասարակարգի կառուցումը։ Հետազոտված են սոցիալական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրա նվաճելու ուղիները, հարստացված է սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման ուժերի դաշինքի վերաբերյալ լենինյան ուսմունքը։

ՍՄԿՊ-ն խիզախորեն և հետևողականորեն պայքարում է ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի հաղթանակի համար, համաշխարհային կոմունիստական շարժման կոլեկտիվ մշակված կուրսը ռևիզիայի ենթարկելու դեմ։ Ներկայումս ստեղծվել է «ձախ» օպորտունիզմի լուրջ վտանգ։ Չինական ղեկավարները հանդես են գալիս մարքս-լենինյան պարտիաների ընդհանուր գծի դեմ։ Նրանք ռևիզիայի ենթարկեցին այդ պարտիաների ստրատեգիան ու տակտիկան, թույլ են տալիս զրպարտչական կոպիտ հարձակումներ ՍՄԿՊ-ի և մյուս կոմունիստական ու բանվորական պարտիաների քաղաքականության դեմ։

Քողարկվելով կեղծ ռևոլյուցիոն ֆրազներով, գերի մնալով ցիտատներին և քարացած դոգմաներին, չինական ղեկավարները գրոհներ են կատարում մեր պարտիայի XX և XXII համագումարների որոշումների, ՍՄԿՊ ծրագրի դեմ, կոմպարտիաների ներկայացուցիչների 1957 և 1960 թվականների խորհրդակցությունների փաստաթղթերում բովանդակվող դրույթների դեմ։

Ո՞րն է, մի կողմից, Չինաստանի կոմպարտիայի և, մյուս կողմից, ՍՄԿՊ-ի ու մյուս եղբայրական պարտիաների տարաձայնությունների էությունը։ Նախ և առաջ պատերազմի և խաղաղության հարցերի վերաբերյալ ունեցած տարակարծությունների մեջ։ Մեր պարտիան, համաշխարհային կոմունիստական շարժումը առաջնահերթ խնդիր են համարում պայքարը խաղաղության համար, ջերմամիջուկային աղետը կանխելու համար։ Մենք ասում ենք՝ նկատի ունենալով, որ պայմանները փոխվել են հօգուտ սոցիալիզմի, սոցիալիստական երկրների, աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց միացյալ ջանքերով պատերազմը կարելի է կանխել։ Իսկ չինական ղեկավարները գտնում են, որ

պատերազմին վերջ տալ չի կարելի, քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, որ խաղաղ գոյակցությունը պատրանք է, որ խաղաղության պայքարը խանգարում է ռևոլյուցիոն պայքարին։ Իսկ ատոմային ռումբը «թղթե վագր» է, և վախենալու ոչինչ չկա։

Այս հարցում չինական ղեկավարների գրաված դիրքը վկայում է, որ նրանք չեն հավատում բանվոր դասակարգի, ժողովուրդների ուժերին, խաղաղության ուժերին։ Նրանց տեսակետը հակասում է համաշխարհային կոմունիստական շարժման ընդհանուր կուրսին։

Բոլոր ժողովուրդները զայրույթով ընդունեցին չինական ղեկավարների այն հրեշավոր հայտարարությունը, որ նրանք պատրաստ են ապագա ջերմամիջուկային պատերազմում զոհաբերելու 300 միլիոն չինացիների, մարդկության կեսը։ Դրա փոխարեն իբր կործանվի իմպերիալիզմը և հաղթած ժողովուրդները փլատակների վրա կկառուցեն «հազար անգամ բարձր քաղաքակրթություն»։ Պատահական չէ, որ չինական դոգմատիկները կատաղաբար հանդես են գալիս մթնոլորտում, տիեզերական տարածության մեջ և ջրի տակ միջուկային զենքի փորձարկումներն արգելելու պայմանագրի դեմ։

Մեր պարտիան տեսականորեն ապացուցել և գործնականում հաստատել է, որ արդի պայմաններում միջազգային ռևոլյուցիայի վրա մենք գլխավոր ներգործությունն ունենում ենք տնտեսական ճակատում ձեռք բերած հաղթանակներով, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդումով։ Խաղաղության և խաղաղ գոյակցության պայքարը չի արգելակում միջազգային բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարը, այլ, ընդհակառակն, նպաստում է այդ պայքարին։ Իսկ չինական ղեկավարները հանդես են գալիս ուրիշ երկրներում ռևոլյուցիան «առաջ մղելու» օգտին՝ դրսից ռազմական միջամտության ճանապարհով։

Մարքսիստ-լենինյանները վճռականապես մերժում են նման ավանտյուրիստական գիծը։ Մեր պարտիան հաստատորեն կիրառում է խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականություն, ակտիվորեն պայքարում ջերմամիջուկային պատերազմի կանխման համար, ամբողջ աշխարհի կայուն խաղաղության համար։

Չինական ղեկավարները ստանձնել են Ստալինի անձի պաշտամունքի պաշտպանների աննախանձելի



դերը։ ՍՄԿՊ-ն, նրա Կենտրոնական կոմիտեն ամբողջ ժողովրդի պաշտպանությամբ մերկացրին անհատի պաշտամունքը, վերացրին նրա վնասակար հետևանքները։ Մեր երկրում վերականգնվեցին պարտիական ու պետական կյանքի լենինյան նորմաները։ Դրա շնորհիվ աճեց կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի համար մղվող պայքարում։ Ո՛չ, ոչ ոքի և երբեք չի հաջողվի մեր երկիրը վերադարձնել անհատի պաշտամունքի ժամանակները։

Սովետական մարդկանց համար տարօրինակ ու վայրագ բան է լսել, որ չինական ղեկավարները փորձում են վատաբանել ՍՄԿՊ ծրագիրը՝ մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման ծրագիրը։ Չինական ղեկավարները հանդես են գալիս ծրագրի այն դրույթների դեմ, որոնք վերաբերում են մեր համաժողովրդական պետությանը, ամբողջ ժողովրդի պարտիային։ ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեն հուլիսի 14-ի իր բաց նամակում պարզ ու տեսականորեն հիմնավորված կերպով ցույց տվեց, որ նրանց դատողությունները ոչ մի հիմք չունեն, կտրված են կյանքից, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պրակտիկայից։

Պայքար խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի համար՝ ահա ՍՄԿՊ-ի և մյուս եղբայրական պարտիաների մշակած գլխավոր գծի էությունը։ Այդ գծին միահամուռ հավանություն են տալիս սովետական ժողովուրդը, կոմունիստները և մեր ամբողջ մոլորակի բարի կամքի մարդիկ։ Մեր պարտիան ամեն ինչ անում է մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա միջազգային կոմունիստական շարժման միասնությունն ամրապնդելու համար։

Մ. ՍՏԵՊԻՉԵՎ

# ՍԱՅԱԹ-ՆՈՎԱ

(Ծննդյան 250-ամյակի առթիվ)

ՄՈՐՈՒՍ ՀԱՍՐԱԹՅԱՆ



Հայ աշխատավոր ժողովրդի անմահացած զավակներից մեկի՝ Սայաթ-Նովայի ծննդյան 250-ամյակը նշվում է հոկտեմբեր ամսին։ Սակայն նշվում է ոչ միայն Հայաստանում, այլև Վրաստանում և Ադրբեջանում, ամբողջ Սովետական Միության մեջ և վերջապես ամբողջ առաջավոր մարդկության գրական-գիտական հասարակայնության կողմից։ Այդ օրերն առանձին հանդիսավորությամբ են անցնում հատկապես Հայաստանում, Վրաստանում և Ադրբեջանում, որովհետև Սայաթ-Նովան, իրավամբ, պատկանում է այդ երեք ժողովուրդներին՝ նրանց գրականությանը։ Դրա պատճառը հենց Սայաթ-Նովայի կյանքն է և նրա բացառիկ ստեղծագործությունը այդ երեք ժողովուրդների լեզվով, այն էլ համարյա հավասար տաղանդով, բայց հավասար հարազատությամբ։ Հայ, վրացի, ադրբեջանցի յուրաքանչյուր գրականագետ-գիտնական Սայաթ-Նովային կարող է ավելի իրենը համարել, քան մյուսինը։

Սայաթ-Նովան ժողովրդական լեզվով, ժողովրդական աշուղական-բանաստեղծությունը հասցրեց պոեզիայի բարձր գագաթներին. իր պարզությամբ, անմիջականությամբ, չափի զգացումով, անմոռաց պատկերներով, հարցերի ընդգրկումով, առաջավոր տեսակետներով, հումանիզմով, բարձր կուլտուրայով։



Նա իր ականջը դրել էր ժողովրդի սրտին, անկախ լեզվից ու հավատից, ջուր էր խմում ժողովրդական աղբյուրից։ Աշխատավոր մարդու երազների թարգմանը դառնալով, լավի, առաջավորի, խաղաղության, եղբայրության և գեղեցիկ ու երջանիկ կյանքի քարոզիչն էր։ Սայաթ-Նովան ծնվել էր բանաստեղծ լինելու համար։ Միաժամանակ Սայաթ-Նովան, ինչպես վկայում են ժամանակակիցները, հրաշալի ձայն ունեցող երգիչ էր. ըստ որում երգում էր ոչ միայն ժամանակին հայտնի մոտիվները, այլ մեծ մասամբ իր իսկ հորինած մոտիվները՝ այսինքն տաղանդավոր երգահան էր։ Նրա եղանակների մի չնչին մասը սերնդե-սերունդ հասել է մեզ և այսօր հնչում է նույն հարազատությամբ ու գրավչությամբ, ինչպես ավելի քան 200 տարի առաջ։ Ավելին, նա անզուգական նվագող է եղել ժամանակի համարյա բոլոր գործիքների վրա։ Այդ էր պատճառը, որ ճորտ արհեստավորը Թիֆլիսի հրապարակներում հռչակվելով, հասավ մինչև վրաց թագավորների պալատը և ավելի քան 15 տարի հանդիսացավ պալատական գլխավոր երգիչ-երաժիշտը։ Այսպես էլ նրա ստեղծագործությունները հաղթեցին ժամանակի մոռացությանը, քննություն բռնեցին ամենամեծ դատավորի՝ ժամանակի առաջ, քանի հեռացան, ավելի սիրելի դարձան, թանգացան և հետզհետե տարածվելով ու բարձրանալով իրենց հեղինակի կենսագրության նման բարձրացան մինչև համաշխարհային գրականության պալատները։

Ո՞վ է Սայաթ-Նովան, որի իսկական անունն է Արութին (Հարություն)։ Ինքը՝ բանաստեղծ-աշուղը, մի քանի անգամ գրել է, որ իր հոր անունը Կարապետ է, եկած Հալաբից, իսկ մոր անունը Սառա, կնոջ անունը Մարմառ։ Թե ինչ պատճառով ու հանգամանքներում է Կարապետը հեռավոր Սիրիայի Հալաբ քաղաքից եկել հասել Հայաստան և այստեղից վրաց հայաշատ մայրաքաղաքը, մեզ համար պարզ չէ։ Վրաստանի թագավորի որդին, որը տեսել էր Սայաթ-Նովային, նրա մասին գրել է, որ Սայաթ-Նովան Հայաստանի Լոռի գավառից է, Սանահին գյուղից, որը պատկանում էր Վրաստանի թագավորական տանը, բայց Սայաթ-Նովան միշտ ապրել է Թիֆլիսում և եղել է թագավորական պալատի գլխավոր սազանդարը։ Սա ավելի ճիշտ է, որովհետև պատանի Արութինը իր գրագիտությունը կարող էր սո-

վորած լինել Սանահինի հին ու նշանավոր վանքի ամեն տեղ հռչակված դպրոցում։ Հայտնի է նաև, որ Թիֆլիսում նրան արհեստի են տալիս (12 տարեկանում) ջուլհակի մոտ։ Բայց իր երաժշտական շնորհքը և երգեր հորինելը նրան այնքան են հայտնի դարձնում, որ Վրաստանի թագավորական տունը իրենց ճորտին տեր է կանգնում՝ պալատում նվագելու, երգելու հրաման տալով։ 1744 թվականին, երբ Իրակլի II Վրաստանում թագավոր է կարգվում, այդ թվականից էլ Սայաթ-Նովան նշանակվում է պալատական սազանդարների գլխավոր և դառնում երիտասարդ թագավորի սիրելին։

Սակայն պալատական միջավայրը Սայաթ-Նովային չի կարողանում կտրել աշխատավոր ժողովրդից։ Նա իրեն հայտարարում է ժողովրդի ծառա— «խալխի նոքար» և բացարձակ կերպով պաշտպանում ճորտ գյուղացիների շահերը։

Սայաթ-Նովան անվախ կերպով դատապարտում, ծաղրում և մերկացնում է բարձր իշխանավորներին, պալատականներին, բարձր հոգևորականներին, վաշխառու առևտրականներին՝ պաշտպանելով ճորտերի, աղքատների շահերը։ Ժողովրդի ծոցից դուրս եկած, կյանք տեսած և զարգացած այդ ըմբոստ հանճարը հասկացել էր, որ ֆեոդալական կարգերը ոչ թե բնական երևույթ են, աստծու կողմից հիմնադրված, այլ ունևոր, իշխանավոր մարդկանց ստեղծած անարդար կարգերն են։ Եվ Սայաթ-Նովան իր երգերի-ոտանավորների մեջ համարձակ քարոզեց մարդու ազատությունը, դեմ դուրս եկավ այդ կարգերի դեմ, կանգնեց աշխատավոր ժողովրդի կողմը։ Նա սուր ծաղրեց բոլոր այն մարդկանց, իշխաններին, որոնք անձամբ ոչնչություններ էին, բայց դաժան ու անխիղճ և միայն իրենց ծագումով, իրենց պապերով էին հպարտանում։ Նրանց համեմատում էր ջորու հետ, որը կարող է հպարտանալ միայն «իր մորով, որ ձի է», մոռանալով հորը։ Ծաղրում է և առևտրականներին, մանավանդ վաշխառուներին, որոնք մարդամեջ են ընկնում իրենց փողով, անարդար վաստակով ու հարստությամբ։ Ճիշտ է, երգիչը ժողովրդին պայքարի բացարձակ կոչ չի անում դրանց դեմ, ավելի ճիշտ մեզ նման ոտանավորներից չեն հասել, բայց հաճախ նրանց վախեցնում է, որ «դովլաթը էյթիբար չունի», միշտ չի մնում մարդու ձեռքին, որ ավելի լավ է ազնիվ անուն վաստակել, որովհետև



«մահը կաշառք չի սիրում», հավասար աչքով է նայում «աղքատին, հարուստին, թագավորին»։ Նա ասում է. «Աշխարհը քոնը լինի, ինչ պիտի տանես, առաքինություն սիրիր, համեստություն սիրիր, աղքատ սիրիր, օտար սիրիր, ղոնաղ սիրիր, գիր սիրիր, ղալամ սիրիր»։ Իհարկե այդպիսի քարոզներ- խրատներ կային և կրոնական գրքերում, բայց Սայաթ-Նովան ավելին էր ասում։ Նա իր վրացերեն, և մանավանդ ադրբեջաներեն ոտանավորներում սոցիալական հարցեր ավելի է շոշափում։ Օրինակ, ասում է. «Միայն ձուկը չի կարող բողոքել», եթե կենդանի մորթես, որովհետև լեզու չունի, իսկ մարդը պետք է բողոքի։ Իսկական իգիթ մարդն էլ այն է, որ «ծառս կլինի, կմբոստանա և ոտքերի շղթաները կկտրի»։ Վրաստանում ճորտ գյուղացիների մի ըմբոստության համար մեղադրում էին Սայաթ-Նովային, թե նրա վրացերեն գրգռիչ ոտանավորն է առիթը։

Երգիչը գիտեր իր ուժը, չէր վախենում տերերից։ Նրա դեմ դավեր էին սարքում, բամբասում թագավորի առաջ ոչ միայն իշխանները, այլև հոգևորական պետերը, որոնց նույնպես չէր խնայում։ Բայց վրացական հերոս թագավոր Իրակլին պաշտպանում էր Սայաթ-Նովային, որովհետև ինքն էլ շատ չէր սիրում այդ իշխանների այն մասին, որոնք կողոպտում էին երկիրը, դավաճանում իրեն և փորձում անկախ լինել թագավորից։ Միայն, երբ մեկ անգամ Սայաթ-Նովան խիստ ընդհարվել էր մեծ թավադներից մեկի հետ գյուղացիներին շատ հարստահարելու պատճառով, գուցե և այլ պատճառով, երկու-երեք տարով նրան վտարեցին պալատից։ Երգիչը իր բողոք-ոտանավորով դիմում է թագավորին ասելով. «Դու այն գլխից իմաստուն ես, ինչու ես խելքդ հավասարեցնում հիմարներին, ես, ասում է, առանց այն էլ վաղուց դաղված եմ, ինչու ես ինձ նորից քաբաբ անում», իսկ վերջում բողոքում է և հասկացնում, որ ինքը՝ երգիչը, սովորական ճորտ չէ, որ իր արմատները ժողովրդի մեջ է. «Բունիաթս ավաղ չիմանաս, քարափ է, քար ու կրեն է»։

«Ամեն մարդ չի կանա կարդա, իմ գիրն ուրիշ գրեն է,
Ամեն մարդ չի կանա խմի, իմ ջուրն ուրիշ ջրեն է»։

Մի այլ տեղ իր մասին ասում է. «Սայաթ-Նովա

դու նման չես նոքարի, չունքի վալի, խան, թագավոր չես ճանաչում»։

Երգիչը գիտե իր մեծությունը, երբ ասում է. «Աշուղի լեզուն բլբուլ է... Նրան սպանելու ջալլաթ չի լինի»։

Բայց և այնպես ֆեոդալական պայմաններում չէր կարող հաղթող դուրս գալ մի աշուղ-բանաստեղծ, որքան էլ նա տաղանդավոր լիներ և սիրված ժողովրդի կողմից։ Ճիշտ է, Սայաթ-Նովան 1754 թվականին կրկին վերադարձավ պալատ, բայց կարողացավ դիմանալ միայն վեց տարի։ Նա իրեն, այսինքն ժողովրդին չդավաճանեց, չվախեցավ և չլռեց, իր պայքարը շարունակեց ավելի մեծ եռանդով։

Եվ ահա, ավելի քան 200 տարի առաջ, երևի 1760—1762 թվերին Անդրկովկասի ժողովուրդների բլբուլ-երգչի ձայնը այլևս չլսվեց։ Նրան չսպանեցին, բայց համարյա թե կենդանի թաղեցին, փոխելով ոչ միայն նրա բնածին մասնագիտությունը, այլև անունը։

Ծորտ Արությունը իր տաղանդի շնորհիվ դարձել էր Սայաթ-Նովա, ինքը որոշելով իր գրական անունը, և ահա իր կամքից անկախ, նրան կնքեցին Տեր-Ստեփանոս, ուժով դարձնելով շարքային հայ քահանա-տերտեր։ Վրաց մայրաքաղաքից քշեցին հեռավոր Ջաքաթալա, որտեղ կար հայկական փոքրիկ ավան՝ Կախի քարվանսարա անունով։ Չի կարելի ենթադրել, թե երգիչը գուցե իր կամքով է թողել աշխարհիկ կյանքը և կրոնական փարաջա հագել՝ «մեղքերը քավելու» համար։ Վրացերեն գրված երկու բողոք և գանգատ ներկայացնող ոտանավոր է մնացել, որոնց մեջ պարզ դիմում է Իրակլի թագավորին և ասում. «արդար դատեիր, ավելի լավ է Քուռը նետեիր, քո ձեռքով սպանեիր, քան թե այսպիսի դաժան պատիժ տայիր, տերտերի, սգվորի սև շոր հագցնեիր»։ Շուրջ 10 տարի մնաց քահանա, իսկ կնոջ մահից հետո ձեռնադրվեց վանական-վարդապետ և մոտ 25 տարի մնաց Լոռու Հաղպատի վանքում, բայց էլի չհաշտվելով իր այդ վիճակի հետ։ Նրա ժամանակակիցները պատմել են, որ վարդապետ Սայաթ-Նովան, երբեմն հագուստը փոխած ծպտյալ եկել է Թիֆլիս և մասնակցել ժողովրդական տոնախմբություններին։

Երբ Հաղպատի վանքի հոգևոր պետը խիստ դիտողություն է անում երգչին, որ նա ձեռք քաշի սազից



ու երգելուց, մոռանա անցյալը, Սայաթ-Նովան կատակով պատասխանում է, որ իր սազի սիմերը— լարերը «օրհնված են, սուրբ են», որովհետև իրեն օծելու ժամանակ եղել են գրպանում, «մինչև չկտրվեն, պետք է նվագի»։

Այսպես, տարիներ են անցնում, երբ մեկ օր, 1795 թվականի սեպտեմբերին լուր է ստացվում, որ Իրանի բռնակալ Աղա Մահմադ-Խանը մեծ զորքով արշավում է Թիֆլիսի վրա, Սայաթ-Նովան շտապ գնում է Թիֆլիս և իր երկու տղաներին ու երկու աղջիկներին ուղարկում Հյուսիսային Կովկասի հայաշատ Մոզդոկ քաղաքը։ Իրանական բանակը գրավում է Թիֆլիսը, ավերում, այրում, կողոպտում, բնակիչներին կոտորում և մնացած մասին գերի վերցնում։ Ըստ ավանդության պարսից սարվազները (զինվորները) մտնում են մեծ բերդի հայկական եկեղեցին և ծեր վարդապետ Սայաթ-Նովային ևս սրախողխող անում։ Այսպես են պատմել դեպքի ականատես մարդիկ, 1848—1850 թվականներին, Սայաթ-Նովայի կյանքն ու երգերն ուսումնասիրող գիտնական բժիշկ Գևորգ Ախվերդյանին և ցույց տվել նրա գերեզմանի տեղը՝ եկեղեցու պատի տակ։

Այսպես «սիրով գալիս է, սրով գնում Սայաթ-Նովան», ինչպես ասել է հայոց մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանը։

Մեծ երգիչը անմահացավ նաև նրանով, որ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության քարոզիչն էր ու սիմվոլը։

Սայաթ-Նովան երեք լեզվով հորինել է ոչ միայն անզուգական սիրո երգեր, որով հռչակված է աշխարհով մեկ, այլև խրատական-բարոյախոսական, խոհական ու սոցիալական մոտիվներ արտահայտող խաղեր։ Նա իր էպոխայի լավագույն, առաջավոր գաղափարախոսներից մեկն էր. իր դարի ոգու ճշմարիտ արտահայտիչը, նոր դարերի համար ևս անմահ, ճշմարիտ ու հարազատ խոսք ասողը, այն էլ գեղարվեստական բարձրագույն որակով, որի համար էլ որքան հեռանում, նույնքան հարազատ է դառնում նոր սերունդներին, որպես անմահ ու մեծ արվեստագետ ժողովրդի հարազատ զավակ, անմահ է մնում ժողովրդի ու ժողովուրդների հետ։

# ԶՐՈՒՅՑ ԿՈԼԵԿՏԻՎՈՒՄ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Կոմունիստական հասարակարգի կառուցման համար բավական չէ միայն ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազա և նյութական բարիքների առատություն։ Անհրաժեշտ է նաև, որպեսզի հասարակական հարաբերությունները, մարդկանց գիտակցությունը, հոգեբանությունը համապատասխանի նոր հասարակության պահանջներին, անհրաժեշտ է դաստիարակել նոր մարդը՝ կոմունիստական աշխարհայացքով և բարոյականությամբ։ Հետևապես, նոր հասարակության համար մղվող պայքարը դա միաժամանակ պայքար է նոր մարդու ձևավորման և դաստիարակության համար։

Նոր մարդու ձևավորումը բազմակողմանի և բարդ խնդիր է, նրա բոլոր կողմերն ու բաղկացուցիչ մասերը անխզելիորեն կապված են միմյանց հետ։ Մարդու դաստիարակության լավագույն դպրոցը կյանքն է, մեր սովետական իրականությունը, աշխատանքը և ժողովրդի պայքարը։ Այդ գործում բացառիկ կարևոր է կոլեկտիվի և ամենից առաջ աշխատանքային կոլեկտիվի դերը։

Յուրաքանչյուր քայլափոխում մենք համոզվում ենք, որ կոլեկտիվը հզոր ուժ է թե՛ տնտեսական առաջադրանքները կատարելու գործում և թե՛ մարդու դաստիարակության գործում։ Մենք հաջողությունների ենք հասել, որովհետև գործում ենք կոլեկտիվով, միասնաբար և համերաշխ։ Կյանքը ցույց է տալիս, որ կոմունիզմը չի կարելի կառուցել միայնակ, անհատ մարդկանց ուժերով։ Այն կարելի է կառուցել միայն կոլեկտիվ ջանքերով, ամբողջ ժողովրդի միասնական ուժերով։ Համերաշխ կոլեկտիվին սարսափելի չէ ոչ մի դժվարություն, նա միշտ կհասնի հաջողությունների։ Առողջ, առաջադեմ կոլեկտիվը միաժամանակ նրա յուրաքանչյուր անդամի համակողմանի զարգացման, դաստիարակման, կոփման հզոր դպրոց է հանդիսանում։

Եվ պատահական չէ, որ մեզանում անհատը իրեն օրգանապես կապված է զգում կոլեկտիվի հետ, աշխատանքային ընկերների հետ։ Նա կոլեկտիվից դուրս



իրեն մենակ է զգում։ Աշխատանքային ընկերների հետ է նա կիսում իր հաջողությունների պտուղները, իր հոգսերը, ապրումները, ուրախությունն ու տխրությունը։ Եվ որքան լավ է կոլեկտիվը, այնքան մեծ է նրա դաստիարակիչ, բարերար ազդեցությունը անհատի վրա։

Կոլեկտիվը մարդու մեջ մշակում է լավագույն գծեր՝ կարգապահություն, պահանջկոտություն, աշխատանքի, ընկերների, ընտանիքի, հասարակության հանդեպ պատասխանատվության ու հարգանքի զգացմունք։

Կոլեկտիվում մարդը դաստիարակվում է ժողովրդին անձնվիրաբար ծառայելու, իր քաղաքացիական պարտքը ազնվորեն կատարելու ոգով։ Սովետական ժողովրդի աշխատանքային սխրագործությունները սոցիալիզմի կառուցման տարիներին, Հայրենական պատերազմի ժամանակ նրա անօրինակ հերոսությունները այդ բանի անվիճելի ապացույցներն են հանդիսանում։ Կոմունիստական շինարարության այսօրվա եռուզեռում ավելի ու ավելի են դրսևորվում կոլեկտիվում հիանալի կոմունիստական կոփվածք ստացած մարդկանց աշխատանքային խիզախումները, անձնազոհությունները, հայրենիքին նվիրված կերպով ծառայելու բազում օրինակները։

Մեզանում հասարակությունը, կոլեկտիվը մտահոգված են անհատի դաստիարակությամբ, նրա բարօրությամբ, իսկ անհատն էլ իր հերթին հասարակության բարօրությամբ։ Բոլորը մեկի, մեկը՝ բոլորի համար— այս է մեր սկզբունքը։ Կոլեկտիվը շեղված անհատին օգնում է գիտակցելու իր թույլ տված սխալները և կանգնելու ճիշտ ուղու վրա, լավ կոլեկտիվը պայմաններ է ստեղծում անհատի զարգացման համար։ Կոլեկտիվի, հասարակության և անհատի շահերը ներդաշնակվում են։ Եթե կոլեկտիվը դաստիարակում է իր յուրաքանչյուր անդամին, մտահոգվում է նրա բարօրությամբ, ապա կոլեկտիվի ամեն մի ազնիվ, նվիրված անդամ իր հերթին մտածում է իր աշխատանքային կոլեկտիվի, տեղամասի հեղինակության մասին։

«Մեր սովետական սոցիալիստական հասարակությունը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը ՀամԼԿԵՄ XIV համագումարում,— ուժեղ է իր կոլեկտիվությամբ, երբ բո-

լորը պաշտպանում են մեկին, իսկ յուրաքանչյուրը՝ բոլորին, ամբողջ հասարակության շահերը»:

Մարդու մեջ վատ բարքերն ու սովորությունները հաղթահարվում են հիմնականում հասարակական կարծիքի, կոլեկտիվի կարծիքի, ներգործության շնորհիվ: Կոլեկտիվում մարդը ազատագրվում է մեզ համար խորթ սովորություններից ու բարքերից: Մարդկանց միջից դուրս է գալիս, օրինակ, եսասիրությունն ու ծուլությունը, պորտաբույծ կյանք վարելու ձգտումը: Եվ ընդհակառակը, կոլեկտիվում մարդը դաստիարակվում է կոլեկտիվիզմի, աշխատասիրության և հումանիզմի ոգով: Փոխվում է մարդու վերաբերմունքը դեպի աշխատանքը, որը կոմունիզմի կառուցման հիմքն է հանդիսանում: Իսկ աշխատանքի նկատմամբ վերաբերմունքը որոշում է դեպի մարդը, դեպի հասարակությունը ունեցած վերաբերմունքը: Մարդը առաջին հերթին և գլխավորապես կոլեկտիվում է ձեռք բերում կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը: Մեր հասարակարգում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը մարդու պատվի ու հարգանքի չափանիշն է: Մեզանում աշխատանքը մարդուն բերում է փառք ու պատիվ: Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը արտահայտվում է հանրօգուտ աշխատանքով, ազնիվ, նվիրված, բարձր արտադրողական աշխատանքով, աշխատանքային հերոսությամբ:

Մեր երկրում լայնորեն ծավալվել է կոմունիստաբար աշխատելու և ապրելու շարժումը, որի մեջ ընդգրկվել ու ընդգրկվում են բազմահազար կոլեկտիվներ, բրիգադներ: Կոմունիստական աշխատանքի բրիգադները խնդիր են դնում հասնել աշխատանքի բարձր արտադրողականության, տիրապետել նոր տեխնիկային, հարստացնել գիտելիքները, ապրել կոմունիստական կենցաղով: Եվ այդ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվներում է, որ ձևավորվում ու դաստիարակվում է նոր մարդը: Կոլեկտիվում աշխատանքը մարդու մեջ մշակում է բարոյական նոր, ազնիվ գծեր: Մարդիկ դաստիարակվում են փոխադարձ վստահության, փոխօգնության ոգով, պետական օրենքների և բարոյական նորմաների հարգման ու կատարման ոգով, կոմունիստական հասարակարգի մարդուն հատուկ շատ ու շատ բարեմասնություններով:

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկ-



տիվը, օրինակ, որը վերջերս ռեսպուբլիկայում առաջինը արժանացավ կոմունիստականի բարձր կոչմանը, մարդկանց, հատկապես աշխատանքային դաստիարակության հիանալի օրինակ է հանդիսանում: Այստեղ պարտիական կազմակերպությունը, ադմինիստրացիան խելացի աշխատանք են տանում մարդկանց հետ՝ նրանց աշխատանքի նկատմամբ կոմունիստական գիտակցության, բարձր պատասխանատվության ոգով դաստիարակելու, կոլեկտիվի անդամների հանրակրթական և տեխնիկական գիտելիքների մակարդակը բարձրացնելու համար: Առանձին աշխատանք է տարվում մարդկանց կոլեկտիվիզմի ոգով դաստիարակելու, կոմունիստական բարոյականության նորմաները գործարանի մարդկանց կյանքում և կենցաղում արմատավորելու ուղղությամբ: Այժմ բուհերում, տեխնիկումներում և բաներիտ դպրոցներում սովորում են գործարանի 260 բանվոր և ծառայող: Անցած տարիներին մեծ թվով մարդիկ ավարտել են ուսումը և այժմ աշխատում են որպես ինժեներներ, տեխնիկներ: Ամեն տարի 600—700 քիմիագործներ իրենց որակավորումը բարձրացնում են տեխնիկական ուսուցման խմբակներում, գործարանի ավելի քան 800 աշխատողներ ընդգրկված են քաղաքական լուսավորության ցանցում: Գործարանում կազմակերպվում է բազմաթիվ դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ քաղաքական և բարոյագիտական թեմաներով: Գաղափարական-դաստիարակչական աշխատանք են կատարում գործարանի ղեկավար աշխատողները, ինժեներները, ցեխի վարիչները, առաջավորները: Այս ամենի շնորհիվ գործարանի կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի բնավորության գիծ է դարձել՝ ոչ միայն բարձր պատասխանատվությամբ վերաբերվել իր գործին, այլև օգնել ընկերներին, որպեսզի գործարանում ոչ մի ետ մնացող օղակ չլինի:

Կոլեկտիվում կատարվող գաղափարական-կազմակերպչական աշխատանքի շնորհիվ գործարանը միշտ պատվով է կատարում իր առաջադրանքները: Յոթնամյակի անցած չորս ու կես տարում գործարանը 16 անգամ արժանացել է Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ Կարմիր դրոշին և առաջին կարգի մրցանակի:

Կոլեկտիվը, նրա ղեկավարությունը պատասխա-

նատու են ոչ միայն տնտեսական ցուցանիշների համար, այլ նաև նրա յուրաքանչյուր անդամի արարքների համար։ Բազմաթիվ դեպքեր կան, երբ մարդը առաջավոր աշխատող է, իրեն լավ է պահում կոլեկտիվում, իսկ դրսում, հասարակական վայրերում, ընտանիքում իրեն շատ վատ է պահում, թույլ է տալիս խուլիգանական արարքներ, հարբում է, անտարբեր է դեպի իր ընտանիքը, իր երեխաները և այլն։ Կոլեկտիվը ծնողի պես պետք է հետևի իր ամեն մի անդամի քայլին՝ թե աշխատանքում և թե դրսում՝ փողոցում, հասարակական վայրերում, ընտանիքում և այլուր։

Իհարկե չպետք է թույլ տալ անտակտ, գռեհիկ միջամտություն մարդկանց անձնական կյանքին, բայց պակաս վտանգավոր չէ նաև անտարբերությունը, լիբերալիզմը, թողտվությունը, երբ մարդը սխալ ուղի է բռնել, հետևում է հիմար արարքների և վատ հակումներ ունի։ Կոլեկտիվը պետք է անտարբեր չլինի իր անդամների ամենափոքր զանցանքների նկատմամբ, որոնք կարող են մեծանալ և հանցագործությունների հասնել։ Կոլեկտիվը չպետք է քողարկի, հովանավորի վատ արարք թույլ տվողներին, բարոյական նորմաներ խախտողներին։ Այդպիսիների նկատմամբ պետք է հոգատար, համբերատար լինել, համոզել, խրատել, կոլեկտիվ կարծիք ստեղծել նրանց մասին։ Լավերին պետք է խրախուսել, բարի խոսք ասել, իսկ ճանապարհից շեղվողներին կարգի հրավիրել, քննադատել, հասարակական պարսավանքի ենթարկել, կոլեկտիվի հսկողության տակ առնել, նրան փրկել կործանումից։ Անուղղելի մարդիկ չկան։ Հետևապես համբերատար, անհատական աշխատանք պետք է տանել ամեն մեկի հետ, մինչև որ մարդը հրաժարվի վատ արարքներից և դառնա մեր հասարակության լիարժեք անդամ՝ նոր մարդուն հատուկ վարքագծով։ Լինում են դեպքեր, երբ կոլեկտիվի ղեկավարները աշխատում են շուտափույթ ազատվել վատ վարքի տեր անդամներից։ Սա սխալ մեթոդ է։ Այդպիսիներին, ընդհակառակը, պետք է վերցնել կոլեկտիվ հսկողության տակ և նրան դաստիարակել։

Կոլեկտիվը պետք է ամեն ինչ անի իր անդամների դաստիարակության համար, պարտիայի ծրագրում շարադրված կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքներին համապատասխան նոր մարդու ձևավորման համար։

Պ. ՂԱԶԱՐՅԱՆ





# ՕԳՏՎԵԼ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

Ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձ ունի Ղափանի պղնձահանքային կոմբինատի Նոր Բարաբաթում հանքի ագիտատոր, կոմունիստ Տ. Հարությունյանը։ Ավելի քան քսան տարի է, ինչ նա աշխատում է հանքերում՝ որպես նորմավորող։ Այդ տարիների ընթացքում Տ. Հարությունյանը շատ բան է տեսել ու սովորել, խոր կերպով ուսումնասիրել լեռնահանքային արդյունաբերության էկոնոմիկան, հանքագործների բնավորության գծերը։

Այս տարվա անցած ամիսներին նա անց է կացրել զրույցներ հետևյալ թեմաներով՝ «Ինքնարժեքի իջեցման ուղիները», «Աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին», «Աշխատանքի կազմակերպումը հանքում», «Աշխատել կոմունիստաբար», «Հորատող Գրիշա Հայրապետյանի աշխատանքի փորձը» և շատ այլ թեմաներով։

Նա պարբերաբար հանքագործներին պատմում է նորի, առաջավորի մասին, մասսայականացնում, բոլորի սեփականությունն է դարձնում առաջավոր հանքագործների փորձը։ Իր մի զրույցի ժամանակ նա հանգամանորեն պատմել է անվանի հորատող Գրիշա Հայրապետյանի աշխատանքի փորձի մասին։

Ամենակարևորն այն է, որ ագիտատորը իր զրույցի ժամանակ ցույց է տվել, թե որն է առաջավոր հորատողի աշխատանքի մեթոդների առավելությունը, ինչպես է նա հասնում բարձր արտադրողականության։ Օրինակ, նա պատմել է, որ Գրիշա Հայրապետյանը հասնում է բարձր արտադրողականության, որովհետև լավ է տիրապետում հորատման տեխնիկային, ճիշտ է դասավորում հորատանցքերը, կրճատում է օժանդակ աշխատանքները և, որ ամենակարևորն է, աշխատաժամանակը օգտագործում է ռացիոնալ կերպով։ Ագիտատորը բերում է կոնկրետ փաստեր։ Օրինակ, եթե առաջներում Գրիշա Հայրապետյանը մեկ հերթափոխությունում փորում էր 24 հորատանցք՝ 1 մետր 50 սմ. խորությամբ, իսկ հետագայում նա արդեն սկսեց փորել 28 հորատանցք 2 մետր 20 սանտիմետր խորու-

թյամբ։ Հորատանցքների քանակության ավելացումը հնարավորություն է տվել ավելի շատ լեռնանցում կատարել և, հետևաբար, հասնել աշխատանքի բարձր արտադրողականության։

Ագիտատոր Շ. Հարությունյանը հանքագործներին մանրամասն պատմել է նաև առաջավոր հորատողներ Ք. Սարգսյանի, Լ. Նովիկովի, Վ. Սամոսվատովի աշխատանքի մեթոդների և ձևերի մասին։ Ամենակարևորն այն է, որ ագիտատորը սոսկ չոր ու ցամաք չի պատմում առաջավոր փորձի մասին, նա կատարում է ընդհանրացումներ, այն լայնորեն տարածում մյուս լեռնագործների մեջ։ Կարելի է վստահորեն ասել, որ ագիտատորի ջանքերի շնորհիվ հանքում այժմ լայն տարածում է գտել առաջավոր հորատողների աշխատանքի փորձը։

Ագիտատոր Շ. Հարությունյանը հետաքրքիր զրույց է անցկացրել նվիրված աշխատանքի կազմակերպման հարցին։ Նա մանրամասն ուսումնասիրել է այդ հարցը, որից հետո հանդես եկել կոլեկտիվի առջև։ Բերենք մի այսպիսի կոնկրետ օրինակ։ Երբ հանքում նոր հանքահոր էին անցնում, այնտեղ տեղավորված էլեկտրական ապարբարձիչը վատ էր աշխատում։ Ագիտատորը պարզեց պատճառը։ Հանքափորները այդ մեքենայի «լեզուն» լավ չէին իմանում։ Եվ ահա ագիտատորի նախաձեռնությամբ հանքում կազմակերպվեց տեխուսուցման խմբակ, որտեղ որակավորվեցին մեխանիկներ Գ. Հարությունյանը և Բ. Մամեդովը։ Դրանից հետո գործը սկսեց լավ ընթանալ։ Եթե առաջ մեկ հանքախորշում երկու ապարբարձիչավորներ էին աշխատում, ապա այժմ աշխատում է մեկը, որը կատարում է երկու ապարբարձիչավարի նորմա։

Ընկեր Շ. Հարությունյանին, ինչպես և մյուս ագիտատորներին, շատ է հետաքրքրում կոմունիստական աշխատանքի շարժումը։ Նա այդ հարցին մեծ ուշադրություն է նվիրում։ Հաճախակի զրույցներ է կազմակերպում կոմունիստական աշխատանքի շարժման մասին, պատմում այդ շարժման առաջավորների աշխատանքի մեթոդների ու ձևերի մասին, ցույց տալիս, թե ինչպիսի պայքար պետք է կազմակերպել այդ կոչմանը արժանանալու համար։

Ագիտատորի աշխատանքի մեթոդը մի ուսանելի կողմ էլ ունի։ Նա հաճախ ինքը չի հանդես գալիս



զրույցներով։ Նրա խնդրանքով ունկնդիրների առջև զրույցներով հանդես են եկել հանքի տեխնիկական ղեկավար Հ. Ահարոնյանը և հանքի պետ Ժ. Սարգըսյանը, որոնք պատմել են տեխնիկական նյութերի ճիշտ օգտագործման, աշխատանքի անվտանգության ապահովման և աշխատանքի կազմակերպման հարցերի մասին։

Նոր Բարաբաթում հանքը, որը կոմբինատի առաջավոր հանքերից մեկն է, շարունակ կատարում ու գերակատարում է իր պլանները։ Օրինակ, անցած ամիսներին հանքի կոլեկտիվը աշխատանքի արտադրողականության պլանը կատարել է 109,1 տոկոսով, ինքնարժեքի իջեցման շնորհիվ ունեցել մոտ 13 հազար ռուբլու խնայողություն։ Այս ցուցանիշներին, իհարկե, հասել է հանքի կոլեկտիվը պարտիական կազմակերպության ղեկավարությամբ։ Բայց դրանում իր համեստ բաժինն ունի նաև ագիտատոր Շ. Հարությունյանը, որը հաճույքով, բարձր պատասխանատվության զգացմունքով է կատարում ագիտատորի պատվավոր պարտականությունը։

ԳՐ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

### ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

## ԻՆՉՊԵՍ ԱՎԵԼԻ ԼԱՎ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի ՆՅՈՒԹԵՐԸ

Ագիտացիոն զրույցների նախապատրաստվելիս ագիտատորները օգտվում են տարբեր աղբյուրներից ու նյութերից, այդ թվում թերթերից ու ամսագրերից, որոնց մեջ որոշակի տեղ է գրավում նաև ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժնի «Ագիտատորի բլոկնոտ»-ը։

«Ագիտատորի բլոկնոտ»-ը ագիտատորի ուղեկիցն է նրա առօրյա աշխատանքում, որտեղ տպագրվում են նյութեր քաղաքական ու գիտական, արդյունաբերական ու գյուղատնտեսական թեմաների վերաբերյալ, մասսայականացվում ու պրոպագանդվում է աշխատանքի առաջավոր փորձը, լուսաբանվում են միջազգային կյանքին

վերաբերող հարցեր։ Փորձի փոխանակման կարգով տպագրվում են լավագույն ագիտատորների զրույցները, ինչպես նաև ագիտացիոն զրույցների համար օրինակելի թեմաներ։ Պարբերաբար տեղեկություններ են տրվում գիտության, տեխնիկայի, կուլտուրայի և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում ձեռք բերված հաջողությունների մասին և այլն։

Ինքնին հասկանալի է, որ «Ագիտատորի բլոկնոտ»-ը կարող են օգտագործել բոլոր ագիտատորները։ Բայց մի շարք հոդվածներ նախատեսված են միայն այն ագիտատորների համար, որոնք, ասենք թե, աշխատում են գյուղատնտեսության մեջ, արդյունաբերական ձեռնարկություններում կամ հանքախորշերում և այլն։ Կան նյութեր, որոնք ագիտատորները օգտագործում են զրույցներում միայն ունկնդիրների որոշակի խմբերի հետ՝ երիտասարդության, հավատացյալների, տնային տնտեսուհիների, թոշակառուների և այլնի հետ։ Դրա հետ միասին, սակայն, պետք է նկատի ունենալ, որ այդ սահմանազատումը պայմանական է, չէ՞ որ արդյունաբերության աշխատողներին հետաքրքրում է նաև գյուղատնտեսության աշխատողների գործերը և ընդհակառակը։ Իսկ այնպիսի իրադարձություններ, ինչպես օրինակ, ՍԿՄՊ Կենտկոմի նոյեմբերյան, մարտյան, հունիսյան պլենումներն էին, անպայման հանդիսացան բոլոր ագիտատորների զրույցների թեման, թե՛ գյուղում, թե՛ քաղաքում։

«Ագիտատորի բլոկնոտ»-ի գրեթե բոլոր նյութերը, շատ քիչ բացառությամբ, պահանջում են ստեղծագործական օգտագործում, այլ ոչ թե զրույցի ժամանակ դրանք մեխանիկորեն վերապատմել կամ ընթերցել։ Մի դեպքում հոդվածները հարկավոր է հարստացնել տեղական օրինակներով, գեղարվեստական գրականության կերպարներով, արվեստի այս կամ այն գործով, մյուս կողմից՝ լրացնել վերջին օրերի նոր փաստերով։ Օրինակ, «Նյութեր զրույցների համար» խորագրի տակ տպագրվող հոդվածները, որոնցով բացվում է ամսագրի յուրաքանչյուր համար, զրույցի ոչ ավարտուն շարադրանքն է, թեման այստեղ շարադրված է համառոտ, համարյա թեզիսային կարգով։

Ուստի այն կարելի է հարստացնել նոր և մանավանդ տեղական փաստերով։ Ագիտատորը, նախապատրաստվելով զրույցի պետք է խորհի, թե ինչպես



այդ նյութերը զուգակցի տվյալ կոլեկտիվի խնդիրների հետ, որտեղ անց է կացվելու զրույցը, ինչպիսի տեղական օրինակներով հարստացնի այն և այլն։ Ահա, օրինակ, «Ագիտատորի բլոկնոտ»-ի 14-րդ համարում տպագրված է հոդված ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի պատմական որոշումների մասին, այն խնդիրների մասին, որոնք պլենումը դրեց մեր երկրի բոլոր աշխատավորների առջև։ Իհարկե, յուրաքանչյուր ագիտատոր, անցկացնելով զրույց այդ թեմայի շուրջը, չի կարող չխոսել նաև տվյալ կոլեկտիվի խնդիրների մասին՝ կապված ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների հետ։ Եթե ագիտատորը պատմում է յոթնամյակի հինգերորդ տարվա մասին, ստանձնած պարտավորությունների մասին, նա անպայման կնշի նաև արտադրության առաջավորների լավ աշխատանքը, որոնց պետք է բոլորը հավասարվեն, կխոսի աշխատանքում եղած թերությունները վերացնելու ներքին ռեզերվները օգտագործելու մասին։ Այսպիսով, օգտվելով «Ագիտատորի բլոկնոտ»-ի նյութերից և տեղական փաստերից, ագիտատորը կզուգակցի համաժողովրդական խնդիրները իր կոլեկտիվի պրակտիկ գործերի հետ։

Տեղական օրինակները կարելի է օգտագործել նաև թվերի և փաստերի, բարոյականության և հակակրոնական թեմաների վերաբերյալ հոդվածներում, ինչպես նաև հատկապես այն նյութերում, որոնք տպագրվում են «Առաջավորների փորձից» ու «Աշխատել և ապրել կոմունիստաբար» բաժիններում։ Լինի հոդվածը գործարանի արտադրության մեքենայացման մասին, էլեկտրաէներգիան խնայողաբար օգտագործելու կամ գյուղատնտեսության այս կամ այն առաջավորի աշխատանքի մասին, բոլոր դեպքերում հարկավոր է ունկնդիրներին ծանոթացնել այդ հոդվածներում շարադրված առաջավոր փորձին, հարկավոր է նաև խոսել այն մասին, թե ինչպես կարելի է այդ փորձը յուրացնել, այն օգտագործել տեղական պայմաններին համապատասխան։ Օգտվելով այդ բաժինների նյութերից, ագիտատորը պետք է հանդես գա որպես առաջավոր փորձի արմատավորման կազմակերպիչ, ոչ միայն պատմի նրա մասին, այլև ցույց տա առաջավորների աշխատանքի մեթոդները, կազմակերպի առաջավոր աշխատողի ելույթը ունկնդիրների առջև, ինչպես նաև էքսկուրսիաներ դեպի առաջավոր ձեռնարկություն կամ կոլտնտեսություն և այլն։

«Ագիտատորի բլոկնոտ»-ի նյութերի օգնությամբ զրույցներ նախապատրաստելիս պետք է նկատի ունենալ մի շատ կարևոր հանգամանք ևս։ Եթե, ասենք, թերթերը կամ ռադիոն՝ մամուլի ամենաօպերատիվ տեսակները, լուսաբանում են երեկվա, ինչպես նաև այսօրվա դեպքերը, իրադարձությունները, ապա ամսագրի հնարավորությունները այդ առումով որոշ չափով սահմանափակ են։ «Ագիտատորի բլոկնոտ»-ը տպագրվում է մեկ շաբաթվա ընթացքում, իսկ ինչպիսի ժամանակ կանցնի այդ պահից, երբ նյութերը ուղարկվում են տպարան և մինչև լույս է տեսնում պատրաստի համարը, ու էլի դեռ մի քանի օր պահանջվում է, որպեսզի ամսագիրը հասնի բաժանորդներին։ Այդ ժամանակամիջոցում կյանքը առաջ է գնում, հատկապես այժմ, երբ նրա շարժումը դարձել է այնպես սրընթաց, կատարվում են նոր իրադարձություններ, որոնք ամսագրի նյութերում չեն արտացոլված, իսկ ագիտատորը պետք է դրանց մասին խոսի։ Հետևաբար, յուրաքանչյուր նյութ, որը այդ պահանջում է, հարկավոր է անպայման լրացնել վերջին օրերին տեղի ունեցած թարմ փաստերով։

Ագիտատորի բլոկնոտ»-ի հոդվածները վերջին օրերի տվյալներով լրացնելը հատկապես անհրաժեշտ է «Միջազգային թեմաներ» բաժնի նյութերը օգտագործելիս։ Օրինակ՝ «Ագիտատորի բլոկնոտ»-ի 16-րդ համարում տպագրվել է «Վերածնման և պրոգրեսի ճանապարհով» հոդվածը, որտեղ պատմվում է իրենց ազգային անկախության համար ժողովուրդների մղած պայքարի մասին։ Բնականաբար այդ հոդվածով հնարավոր չէր մանրամասն քննության ենթարկել չինական ղեկավարների դոգմատիզմը, որ նրանք ցուցաբերում են արդի պայմաններում միջազգային կոմունիստական շարժման, ազգային-ազատագրական շարժման և միջազգային հարաբերությունների շատ կարևոր հարցերի վերաբերյալ։ Այստեղ ագիտատորը պետք է օգտագործի ՍՍՌՄ կառավարության 1963 թվականի օգոստոսի 22-ի և սեպտեմբերի 21-ի հայտարարությունները, ինչպես նաև մամուլում այդ մասին տպագրված բազմաթիվ թարմ նյութեր։

Երբ ագիտատորը զրույց է անցկացնում միջազգային թեմաների շուրջը, նպատակահարմար է, որպեսզի նա օգտվի նաև աշխարհագրական քարտեզից։

Օգտվելով «Ագիտատորի բլոկնոտ»-ի նյութերից,



հարկավոր է նկատի ունենալ, որ ամսագրի ոչ մեծ ծավալը թույլ չի տալիս նրանում տպագրել ընդարձակ մանրամասն հոդվածներ, դրա համար էլ խմբագրությունը այս կամ այն թեմաների վերաբերյալ տալիս է համապատասխան գրականության ցանկ։ «Ագիտատորի բլոկնոտ»-ը ագիտատորներին օգնելու նպատակով յուրաքանչյուր համարում տպագրում է որոշակի թեմաների վերաբերյալ գրականություն, ինչպես նաև համառոտ տեղեկություններ նոր լույս ընծայված գրքերի մասին։

«Ագիտատորի բլոկնոտ»-ում հաճախ տպագրվում են տարբեր դիագրամաներ: Ինչպե՞ս օգտագործել դրանք։ Բոլորից լավն այն է, որ այդ դիագրամաները գեղեցիկ, գունավոր նկարվեն։ Կարելի է վերցնել միայն նկարի ձևը, իսկ թվերը օգտագործել տեղական մասշտաբով։ Այսպես, օրինակ, 16-րդ համարում տպագրված է մի դիագրամա, որը պատմում է, թե 1962 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, երկրի գյուղատնտեսությունը որքան գյուղատնտեսական մեքենաներ է ստացել։ Այդ նույնը կարելի է կազմել յուրաքանչյուր շրջանի համար, բերելով միայն տվյալ շրջանի վերաբերյալ համապատասխան թվեր։

«Ագիտատորի բլոկնոտ»-ում կան նյութեր, որոնք ագիտատորները չեն օգտագործում զրույցների ժամանակ, սակայն՝ կոչված են օգնելու ագիտատորների աշխատանքին։ Այդ ագիտացիոն աշխատանքի փորձի վերաբերյալ հոդվածներն են, ինչպես նաև մեթոդական օգնության կարգով հրապարակված հոդվածները։ Նրանց նպատակն է ագիտատորների սեփականությունը դարձնել մասսայական-քաղաքական աշխատանքների լավագույն ձևերը, օգնել նրանց զրույցները ավելի հետաքրքիր և նպատակասլաց դարձնելու համար։

Այն ագիտատորները, որոնք ստեղծագործաբար են վերաբերվում «Ագիտատորի բլոկնոտ»-ում հրապարակվող նյութերին, նրանց մոտ ծագում են ոչ քիչ թըվով հարցեր, դիտողություններ ու ցանկություններ։ Այդ դիտողությունները, ցանկությունները հարկավոր է ուղարկել խմբագրությանը։ Որքան շատ մեր ընթերցողները արտահայտեն իրենց ցանկությունները ամսագրի բովանդակության, առանձին հոդվածների վերաբերյալ, այնքան խմբագրությունը ավելի լավ կիմանա ագիտատորների պահանջները և կկարողանա դրանք բավարարել։

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Աշխատանքային նոր հաջողություններով նշանավորենք մեծ նոյեմբերի 46-րդ տարեդարձը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Կոմունիստական շինարարության մեր հաջողությունները մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կենսագործումն են, *ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում արտասանած ճառից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 30-ի համարում։*

*Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ*— Սովետական երկրի կյանքի մեծ տասնամյակը, *ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումին տված զեկուցումից, տպագրված առանձին գրքով, էջ 6—17, Հայպետհրատ, 1963։*

Դեպի մեծ նոյեմբերի 46-րդ տարեդարձը, *նյութեր Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան նոր հաջողություններով դիմավորելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի սեպտեմբերի 17-30-ի համարներում։ Օգտագործել նաև տեղական նյութեր, տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի կամ բրիգադի ստանձնած պարտավորությունները կատարելու մասին։*

## 2. Արժանավայել գործերով դիմավորենք ՀԿՊ XXIII համագումարը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայաստանի կոմպարտիայի հերթական XXIII համագումար հրավիրելու մասին, *ինֆորմացիոն հաղորդագրություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 6-ի համարում։*

Դեպի Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարը, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 10-ի առաջնորդողը։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1963 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ *(Օգտագործել նաև տեղական նյութեր՝ ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի կամ բրիգադի ստանձնած պարտավորությունները կատարելու մասին)։*



## 3. Սրբությամբ պահպանենք հանրային սեփականությունը, մեր հասարակարգի հիմքերի հիմքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Կոմունիստական դաստիարակությունը և անհատի համակողմանի զարգացումը, *Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագրի մասին զեկուցումից, տպագրված «ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը» խորագրով գրքում, էջ 251-260, Հայպետհրատ, 1962։*

Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ— Հանրային սեփականությունը մարդկանց միջև նոր հարաբերություններ դաստիարակելու հիմքն է, *առանձին գիրք, էջ 42—47, Հայպետհրատ, 1963։*

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա (Հիմնական Օրենք), հոդված 106:

## 4. Զրիկերը մեր թշնամին է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ— Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, *առանձին գիրք, էջ 33—42, Հայպետհրատ, 1963։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— *Հասարակության* բոլոր ուժերը ընդդեմ ձրիակերների, «Դաստիարակչական աշխատանքի ուղն ու ծուծը» հոդվածից, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի սեպտեմբերի 19-ի համարում։*

## 5. Երկրին տանք ավելի շատ բամբակ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Հաջողությամբ* նախապատրաստվել բամբակի բերքահավաքին, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի սեպտեմբերի 17-ի առաջնորդողը։*

(Զրույցի ընթացքում օգտագործել տվյալ կոլտնտեսության կամ սովխոզի առաջավոր բամբակագործների աշխատանքի դրական փորձը)։

## 6. Չինական ղեկավարների սխալները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական կառավարության հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի սեպտեմբերի 22-ի և 24-ի համարներում։*

Սոցիալիզմը և խաղաղությունը անբաժանելի են, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի սեպտեմբերի 5-ի համարում։*

*ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԱՆՎԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ՏՈՒՆ*

Ինդեքս՝ 77704

# ԲԱՑՎԱԾ Է

«Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թվակա-
նի բաժանորդագրությունը.

1 ամիսը — 15 կոպեկ

6 ամիսը — 90 կոպեկ

12 ամիսը — 1 ռուբ. 80 կոպեկ

մեկ համարը — 8 կոպեկ

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Խմբագիր՝ Վ. Խ. ԽՆԿԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы ЦК КП Армении

АГИТАТОРИ БЛОКНОТ

№ 19

1963

ՎՖ 10468 Պատվեր 876 Տիրաժ 7963

Հանձնված է արտադրության 21/IX 1963 թ.
Ստորագրված է տպագրության 28/IX 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.